

# ՆՈՐ ՏԱՐԻՆ ԵՒ ՍՈՒՐԲ ԾՆՈՒՆԴԸ

ԻՐԵՆՑ ԲԱՐԵԿԱՄՆԵՐՈՒՆ, ՅԱՃԱԽՈՐԴՆԵՐՈՒՆ ԵՒ ԱՇԽԱՏԱՒՈՐՆԵՐՈՒՆ

## ԿԸ ՇՆՈՐՀԱՒՈՐԷՆ

## Ս. ԳՐԻԳՈՐ ԼՈՒՍԱՒՈՐԻՉ ԵԿԵՂԵՑՒՈՅ ՕԾՄԱՆ ՔԱՌԱՍՆԱՄԵԱԿԻՆ ԱՌԹԻՒ

### ՍՏԱՑՈՒԱԾ ՍՐՏԱԲՈՒԽ ՆՈՒԷՐՆԵՐՈՒ ՑԱՆԿԸ ԵԿԵՂԵՑՒՈՅ ՊԱՅԾԱՌՈՒԹԵԱՆ ՀԱՄԱՐ

( Ե Գ Ի Պ Տ Ա Կ Ա Ն Դ Ա Հ Ե Կ Ա Ն Ո Վ )

| | |
|---|---|
| Տէր և Տիկին Աւետիս Ն. Զագըճեան | 5000 |
| » » Երուանդ Թումայեանց | 5000 |
| » » Էտուար Զօրայեան | 3000 |
| » » Նազարէթ Գասապեան | 2500 |
| » » Վահան Գըզըլեան | 2500 |
| Տիարք և Տիկնայք Փիլպեռ և Պերճ Յովակիմեան եղբ. | 2500 |
| Տէր և Տիկին Արթօ Պըլըքասնեան | 2500 |
| » » Ալպէռ Քրէտեան | 2500 |
| » » Օննիկ Ալեքսանեան | 2000 |
| » » Տիրան Կիւրեղեան | 2000 |
| » » Անդրանիկ Մեսրոպեան | 2000 |
| » » Զարեհ Սագայեան | 2000 |
| » » Յովհաննէս Քէհեայեան | 2000 |
| » » Փօլ Քիլիտճեան | 1500 |
| » » Սարգիս Ալթունեան | 1000 |
| » » Նուպար Բանեան | 1000 |
| » » Վահան և Նուարդ Գազանճեան | 1000 |
| » » Լեւոն Գարագաշեան | 1000 |
| Տիար Մամաս Գալփաքճեան | 1000 |
| Տէր և Տիկին Լորիս Գարգուր | 1000 |
| Տիար Վահրամ Գարալանեան | 1000 |
| Տէր և Տիկին Տիգրան Էվէրէկլեան | 1000 |
| » » Յակոբ Էքմէքճեան | 1000 |
| » » Երուանդ Թաշճեան | 1000 |
| » » Թորոս Խաչատուրեան | 1000 |
| » » Թադէոս Կիրակոսեան (Միս Էճիբթ) | 1000 |
| » » Հրանդ Կէօզիւպէօյիւքեան | 1000 |
| » » Նասիպ Կարիպեան | 1000 |
| » » Մկրտիչ Ճանիկեան | 1000 |
| » » Գրիգոր Ճիլաճեան | 1000 |
| » » Վահէ Մանուկեան | 1000 |
| » » Վահրամ Մանուկեան | 1000 |
| » » Ժորժ Միքայէլեան | 1000 |
| » » Կարօ Ներսեսեան | 1000 |
| » » Պետրոս Ոսկերիչեան | 1000 |
| » » Օննիկ Սուլթանեան | 1000 |
| Տիար Սարգիս Վուքուֆեան | 1000 |
| Տէր և Տիկին Խաչիկ Րէյիսեան | 1000 |
| » » Պերճ Օտապաշեան | 1000 |
| » » Երուանդ Արարքցեան | 500 |
| » » Արամ Ալեքսանեան | 500 |
| » » Գապէռ Արապեան | 500 |
| » » Յարութիւն Գարանֆիլեան | 500 |
| » » Յակոբ Մովսէս Գազանճեան | 500 |
| Տիար Ռուբէն Գազազեան | 500 |
| Տէր և Տիկին Մեսրոպ Գույումճեան | 500 |
| » » Ալպէռ Գալլնեան | 500 |
| » » Հրանդ Գութնուեան | 500 |
| Տիարք Կարպիս և Միհրան Եազըճեան եղբ. | 500 |
| Տէր և Տիկին Անդրէ Եսայեան | 500 |
| » » Յոլակ Երզնկացեան | 500 |
| Տոքթ. և Տիկին Ն. Եագուպեան | 500 |
| Տէր և Տիկին Յակոբ Եբրանոսեան | 500 |
| Տէր և Տիկին Վազգէն Եկարեան | 500 |
| » » Խորով Զաքարեան | 500 |
| » » Միքայէլ Թորիկեան | 500 |
| » » Յակոբ Թաշգաբուլեան | 500 |
| » » Խաչիկ Թաշգաբուլեան | 500 |
| » » Վարդան Թապաքեան | 500 |
| » » Հրանդ Թուֆայեան | 500 |
| Տիար Արթիւր Թէրզեան | 500 |
| Տէր և Տիկին Յակոբ Ժամկոչեան | 500 |
| Տիկին Սիրանուշ Իպիշեան | 500 |
| Տէր և Տիկին Գասպար Կրտոտեան | 500 |
| » » Յակոբ Կիւլպէնկեան | 500 |
| Տիար Էտուար Կիւլեան | 500 |
| Հ.Բ.Ը. Միութիւն | 500 |
| Տէր և Տիկին Երուանդ Հացունի | 500 |
| » » Յակոբ Համբիկեան | 500 |
| Տոքթ. և Տիկին Եդ. Ճիզմէճեան | 500 |
| Տէր և Տիկին Բարունակ Մատղաչեան | 500 |
| » » Ժագ Մեսրոպեան | 500 |
| Տիկին Անի Մանուկեան | 500 |
| Տէր և Տիկին Յակոբ Մարգարեան | 500 |
| Տիար Հայկ Մաստիկեան | 500 |
| Տէր և Տիկին Աստիկ Մէլէմէթճեան | 500 |
| » » Վահէ Մինէթեան | 500 |
| » » Լեւոն Նատիր | 500 |
| » » Վահան Չէչճէնեան | 500 |
| Տիար Գրիգոր Պարոնեան | 500 |
| Տէր և Տիկին Տիգրան Պապիկեան | 500 |
| » » Անդրէ Պօհճալեան | 500 |
| » » Կարպիս Պէրպէրեան | 500 |
| » » Նուպար Պալեան | 500 |
| » » Եգնիկ Պալունի | 500 |
| » » Ներսէս Պետրոսեան | 500 |
| » » Սարգիս Պալեան | 500 |
| » » Եսայի Ստեփանեան | 500 |
| » » Հայկ Սրէնճեան | 500 |
| Տիար Վահէ Սրէնճեան | 500 |
| Տիկին Հայկանուշ Սարգիսեան | 500 |
| Տէր և Տիկին Սիմոն Ստեփանեան | 500 |
| Օր. Զապէլ Ստեփանեան | 500 |
| Տէր և Տիկին Ալ. Սարուխան | 500 |
| » » Կարօ Վարժապետեան | 500 |
| » » Միսաք Տէրոնեան | 500 |
| » » Վահագն Տեփոյեան | 500 |
| » » Յակոբ Տէր Ստեփանեան | 500 |
| » » Կարապետ Տէմիրճեան | 500 |
| » » Ժիրայր Փափազեան | 500 |
| » » Վրէժ Քէօհնէլեան | 500 |
| Տիկին Սրբուհի Օտապաշեան | 500 |
| Տէր և Տիկին Հայկ Օհաննէսեան | 500 |
| » » Յակոբ Մինէթեան | 500 |
| Հայ Մշակոյթի Բարեկամներու Ընկ. | 500 |
| Տէր և Տիկին Նուպար Տէօվլէթեան | 500 |

( Շարունակելի )



## ՆՈՐ ՏԱՐՈՒԱՅ ԼԱՒԱԳՈՅՆ ՆՈՒԷՐԸ

### ՁԵՐ ՍԻՐԵԼԻՆԵՐՈՒՆ

*Այն ազգայինները, որոնք կը փափաքին Նոր Տարուան առթիւ «Ջահակիր» նուիրել իրենց Հայաստանի կամ արտասահմանի ազգականներուն և բարեկամներուն, կրնան հեռաձայնել թերթիս վարչութեան (հեռ. 915013) ամէն երեկոյ ժամը ճէն 8 (ի բաց առեալ կիրակի օրերէն), իսկ Աղեքսանդրիոյ մէջ՝ մեր ներկայացուցիչ Պր. Վահան Պէնտեանին (հեռ. 21942)։*

ՎԱՐՉՈՒԹԻՒՆ «ՋԱՀԱԿԻՐ»Ի

ՋԱՀԱԿԻՐ

ԱԶԳԱՅԻՆ ԳՐԱԿԱՆ ԸՆԿԵՐԱՅԻՆ ԵՌԱԹԵՐԹ

9 ՅՈՒՆՎ. 1969

# ★ ★ ՍՈՒՏԱՆԱՀԱՅ ԿԵԱՆՔ ★ ★

## ՆՈՐ ՏԱՐԻՆ ԵՒ ՍՈՒՐԲ ԾՆՈՒՆԴԸ ԿԸ ՇՆՈՐՀԱՒՈՐԵՆ

ՆՇԱՆ ԲԱՐՁԻԿԵԱՆ ԵՒ ԸՆՏԱՆԻՔ
ԵԼԵԿՏՐԱԳԷՏ
Խարթում
P·O·B· 1676 Khartoum

ԲԵՆԵԱՄԻՆ ՎԱՃԱՌԱՏՈՒՆ
BENJAMIN STORES
Novelty Textiles
Խարթում Հեռ. 71890
P·O·B· 955 Khartoum

ՆԱԶԱՐԷԹ ԷՕՄԻՒՐԵԱՆ
ԵՒ ԸՆՏԱՆԻՔ
Խարթում
P·O·B· 105 Omdourman

ԳՐԻԳՈՐ ԻԿԻՏՊԱՇԵԱՆ
ԵՒ ԸՆՏԱՆԻՔ
Խարթում
P·O·B· 50 Khartoum

ԶԵՆՈԲ ԽԱՉԻԿԵԱՆ ԵՒ ԸՆԿ.
ZENOP KHATCHIKIAN & CO LTD.
Խարթում Հեռ. 72096
P·O·B· 33 Khartoum

ՏԻՐԱՆ ԿԻՒՄԻՒՇԵԱՆ
ՀԱՍՏԱՏՈՒԹԻՒՆ
Խարթում
P·O·B· 859 Khartoum

Օ· ԺԱՆՈՅԵԱՆ ԵՒ ԶԱՒԱԿՆԵՐ
ԱՌԵՒՏՐԱԿԱՆ
Խարթում
P·O·B· 122 Omdourman

ՄԱՐԿՈՍԵԱՆ ԵՂԲԱՐՔ
ՀԱՍՏԱՏՈՒԹԻՒՆ
Օմտուրման
P.O.B. 105 Omdourman

ՍԻՄՈՆ ՄԵԼՔՈՆԵԱՆ
PHOTO SIMON
Prop. Simon H. Melkonian
Խարթում Հեռ. 71331
P.O.B. 926 Khartoum

ԱՐԹԻՆ ՅՈՎՀԱՆՆԷՍԵԱՆ
BOGHOS JEWELLERY
Prop. Artin B. Hovannessian
Խարթում Հեռ. 71936
P·O·B· 690 Khartoum

ՆՈՒՊԱՐ ՅՈՎՀԱՆՆԷՍԵԱՆ
NOUBAR'S PRINTING PRESS
Prop. Noubar Hovhannessian
Խարթում Հեռ. 77983
P·O·B· 690 Khartoum

ՆՈՐԱՅՐ ՔՕԼԱԳԵԱՆ
SUN ALUMINIUM FACTORY
Օմտուրման
P.O.B. 122 Omdourman

ՊԱՐՍԱՄԵԱՆ ՀԱՍՏԱՏՈՒԹԻՒՆ
T. H. BARSAMIAN
ORGANISATION
Խարթում
P·O·B· 127 Khartoum

ՄԱՐԻ ՎԱՆԵԱՆ
ԵՒ ԶԱՒԱԿՈՒՆՔ
Խարթում
P·O·B· 816 Khartoum

ԳՐԻԳՈՐ ՏԷՄԻՐՃԵԱՆ
ՈՍԿԵՐԻՉ
DEMIRDJIAN JEWELLERS
Խարթում
P.O.B. 414 Khartoum

ՏԷՐ ՊԵՏՐՈՍԵԱՆ ԵՂԲԱՐՔ
ՎԱՃԱՌԱՏՈՒՆ
HAIG STORES
Խարթում
P·O·B· 515 Khartoum

# ՖՈՒԹՊՈԼ

**ԼԻԲԱՆԱՆ**

## Հ.Մ.Մ. – Հ.Մ.Ը.Մ. ՄՐՑՈՒՄԸ

Կիրակի, 29 Դեկտեմբեր 1968, ժամը 15ին ընդհանուր խանդավառութեան մէջ, ի ներկայութեան մօտ ութը հազար հանդիսականներու, տեղի ունեցաւ օրուան ամենէն վճռական հանդիպումը երկու հայկական խումբերուն՝ Հ.Մ.Մ.ի և Հ.Մ.Ը.Մ.ի միջեւ։

Եղբայրական մթնոլորտը գերազանցօրէն տիրեց մրցումի ամբողջ տեւողութեան ընթացքին դաշտին թէ թրիպիւններուն վրայ։ Ու շնորհիւ մարզիկներու և մարզասէրներու գնահատելի մարզական ոգիին, մրցումը բարոյական աննախընթաց յաղթանակ մը եղաւ երկու խումբերուն և մանաւանդ լիբանանեան ֆութպոլին համար։ Արդարեւ, երկու խումբերն ալ կիրարկեցին մաքուր ֆութպոլ մը, կազմակերպեցին գեղեցիկ գրոհներ, բայց որեւէ մէկը չյաջողեցաւ գնդակը զետեղել մրցակից բերդէն ներս։

Հ.Մ.Մ.ի կազմը աւելի շատ հաւանականութիւն ցուցաբերեց կոլ նշանակելու մարզէն ներս։ Արդարեւ, ան չորս—հինգ առիթներով խիստ վտանգաւոր կացութեան մը մատնեց իր մրցակիցին յետապահ գիծն ու բերդը։ Մանաւանդ առաջին կիսախաղի 20րդ և 24րդ վայրկեաններուն, ի յայտ եկաւ թէ Հ.Մ.Մ.ի ջանքերը կրնային կոլով մը չպսակուիլ, պարզապէս բախտին չժպտելուն պատճառաւ։ Արդարեւ, վերոյիշեալ առաջին պարագային Հ.Մ.Ը.Մ. հրաշքով միայն կրցաւ գնդակը հեռացնել իր բերդի գիծէն, իսկ երկրորդին՝ գնդակը չողելով մտնել պարապ բերդէն ներս գնաց զարնուելու ուղղահայեաց տախտակին։

Բ. կիսախաղին, երկու խումբերը փոխն ի փոխ տիրեցին դաշտին վրայ։ Հ.Մ.Մ.ի յառաջապահ գիծը դարձեալ յաջողեցաւ դժուարին կացութեան մատնել մրցակիցը։ Իսկ Հ.Մ.Ը.Մ.ի կազմակերպած գրոհներուն ընթացքին, Հ.Մ.Մ.ի յետսապահ գիծի մարզիկները՝ Մարտիկ Բ., Նշան, Ստեփան և մանաւանդ կիւլապի ու բերդապահ Պետիկ, յաջողեցան հոյակապ խաղարկութեամբ մը փաստել իրենց արժէքն ու հռչակը։

Օրուան իրաւարարը, Սապա Ցայլահ մրցումը վերջացուց 5 վայրկեան առաջ։

Մրցումը վերջ գտաւ 0–0 հաւասար արդիւնքով։

Ժողովուրդը անգամ մը համար եւս, ջերմօրէն ծափահարելէ ետք զինք ողջունող, օրուան 22 հերոսները, եղբայրական ու մարզական խանդավառ ոգիով մեկնեցաւ դաշտէն։

Օրուան մրցումներէն ետք, ընդհանուր դասաւորման մէջ, Հ.Մ.Մ. կը մնայ իր պարագլուխի դիրքին վրայ՝ 2 կէտի առաւելութեամբ։

ԹՂԹԱԿԻՑ



# ՆՈՒԻՐԱՏՈՒՈՒԹԻՒՆՆԵՐ

(ԵԳԻՊՏԱԿԱՆ ԴԱՀԵԿԱՆՈՎ)

Իր սիրելի կողակցին՝ ողբ. Տիկին Դեղձանիկ Լիւլոզեանի մահուան քառասունքին առթիւ և առ նոր քաղցր յիշատակին, Պր. Մկրտիչ Լիւլոզեան կը նուիրէ.

| | |
|---|---|
| Գալուստեանի ճաշի սեղանին | 100 |
| Նուպարեանի ճաշի սեղանին | 100 |
| Կոկանեան սրահին | 100 |
| «Արեւ»ին | 100 |
| «Ջահակիր»ին | 100 |

## ՀԱՅԿԱԿԱՆ ԸՆԹԵՐՑԱՍՐԱՀԻՆ

Տէր և Տիկին Հայկ Օհաննէսեան 100 ե.դ. կը նուիրեն ողբ. Տիկին Միածան Կապէեանի մահուան տխուր առթիւ։

## «ՋԱՀԱԿԻՐ» ԿԸ ՆՈՒԻՐԵՆ ՆՈՐ ՏԱՐՈՒՈՅ ԱՌԹԻՒ

Տիկին Վերժին Մարտինեան (Գահիրէ) մէկ տարուան «Ջահակիր» կը նուիրէ իր քրոջ Տիկին Լիւսի Աչճեանի (Փարիզ)։

Տիկին Վերժին Մարտինեան (Գահիրէ) մէկ տարուան «Ջահակիր» կը նուիրէ Մելքոնեան Կրթական Հաստատութեան (Կիպրոս)։

Օր. Արշալոյս Շահրոզեան (Գահիրէ) մէկ տարուան «Ջահակիր» կը նուիրէ իր քրոջ՝ Տիկին Փայլուն Սեմէրճեանի (Կետարէֆ)։

Պր. Պերճ Արթինեան (Գահիրէ) մէկ տարուան «Ջահակիր» կը նուիրէ Հոգշ. Տ. Զաւէն Վրդ. Արզումանեանի (Ֆիլատելֆիա)։

Պր. Պերճ Արթինեան (Գահիրէ) մէկ տարուան «Ջահակիր» կը նուիրէ Պր. Յարութիւն Մարոնեանի (Նիւ Եորք)։

Ընկեր Ա. Աճէմեան (Իւնիոն, Ն. Ճ.) մէկ տարուան «Ջահակիր» կը նուիրէ իր քեռորդւոյն Պր. Գէորգ Համալեանի (Երեւան)։

# ՀԱՅԿԱԿԱՆ ԸՆԹԵՐՑԱՍՐԱՀ

## ԳԱՀԻՐԷ

## ՓԻՆԿ - ՓՈՆԿԻ

### ԱՆՀԱՏԱԿԱՆ ԱԽՈՅԵԱՆԱԿԱՆ ՄՐՑՈՒՄՆԵՐ

ԳԱՀԻՐԷԻ ԱՐԵՒՄՏԵԱՆ ՇՐՋԱՆԻ ԲՈԼՈՐ ՄԻՈՒԹԵԱՆՑ ԱՆԴԱՄՆԵՐՈՒՆ ՄԻՋԵՒ (ՄԻՆՉԵՒ 18 ՏԱՐԵԿԱՆ)

Մրցաշարքին աւարտական խաղերը տեղի պիտի ունենան

Շաբաթ, 11 Յունուար 1969, կ.ե. ժամը 7ին

ՀԱՅԿԱԿԱՆ ԸՆԹԵՐՑԱՍՐԱՀԻ ՍԵՂԱՆՆԵՐՈՒՆ ՎՐԱՅ

Աւարտականի մնացած են Ապտինի եւ Կեզիրէի երիտ. կեդրոններու, ինչպէս նաեւ Հայկական Ընթերցասրահի մարզիկները։

**ՄՐՑՈՒՄՆԵՐԷՆ ԵՏՔ**

### ՄՐՑԱՆԱԿԱԲԱՇԽՈՒԹԻՒՆ ԵՒ ԹԷՅԱՍԵՂԱՆ

Ի ՊԱՏԻՒ

ՄԻՈՒԹԵԱՆՑ ՂԵԿԱՎԱՐՆԵՐՈՒՆ ԵՒ ՄԱՐԶԻԿՆԵՐՈՒՆ

Հայ երիտասարդութիւնը սիրով կը հրաւիրուի

# ՏԻԿՆԱՆՑ «ԱՅԾԵՄՆԻԿ» ՄԻՈՒԹԻՒՆ

## ԿԱՐԱՊԵՏ ԱՂԱ ԱԲԻԿԵԱՆ ՀԱՆԳՍՏԵԱՆ ՏՈՒՆ

### ՆՈՐ ՏԱՐՈՒԱՆ ԵՒ Ս. ԾՆՆԴԵԱՆ ՏՕՆԱԿԱՏԱՐՈՒԹԻՒՆ

Տեղի պիտի ունենայ Կիրակի, 12 Յունուար 1969, կէսօրէ ետք ժամը 5ին, Հանգստեան Տան մէջ, Հելիոպոլիս։

Հայկական Ընթերցասրահի Երիտասարդական և Պատանեկան Մարմինները իրենց մասնակցութիւնը պիտի բերեն գեղարուեստական պատշաճ յայտագրով մը։

Կը խնդրենք մեր յարգելի հասարակութենէն, որ ներկայ գտնուի տօնական օրերու առթիւ կազմակերպուած սոյն հանդիսութեան, քաջալերելու համար մեր պատսպարեալները։

ՎԱՐՉՈՒԹԻՒՆ

ՋԱՀԱԿԻՐ
ԱԶԳԱՅԻՆ ԳՐԱԿԱՆ ԸՆԿԵՐԱՅԻՆ ՇԱԲԱԹԱԹԵՐԹ
27 ՓԵՏՐ. 1969

# «ՋԱՀԱԿԻՐ»Ի ՄՐՑԱՆՔԸ

## Հ.Մ.Մ. (ՊԵՅՐՈՒԹ) – ԶԱՄԱԼԷՔ (ԳԱՀԻՐԷ)

### ՄՐՑՈՒՄԻՆ ԱՌԹԻՒ (7-3-69)

«Ջահակիր»ի վարչութիւնը կու գայ տեղեկացնել իր ընթերցողներուն՝ թէ կազմակերպած է Մրցանք մը, Հ.Մ.Մ. (Պէյրութ) ընդդէմ Զամալէք (Գահիրէ) մրցումին առթիւ, որ տեղի պիտի ունենայ Ուրբաթ, 7 Մարտ 1969ին, Զամալէքի դաշտին վրայ։

Պատասխանեցէք ստորեւ տրուած հարցարանին եւ զայն կտրելով ղրկեցէք «Ջահակիր»ի վարչութեան, փոստարկղ 2111, Գահիրէ, ամենաուշը յառաջիկայ Հինգշաբթի, 6 ՄԱՐՏ 1969։

Ճիշդ պատասխանողներուն միջեւ պիտի քաշուի վիճակ ու ա. շահողը պիտի ստանայ ԵՐԿՈՒ ԵԳԻՊՏԱԿԱՆ ՈՍԿԻ, իսկ երկու յաջորդները՝ մէյմէկ օգտակար նուէր։

Ծնթ.— Կ՚իբանանի մեր ընթերցողները կրնան իրենց պատասխանները ուղարկել (գոց պահարանի մէջ) Հ.Մ.Մ.ի մարզիկներուն կամ ղեկավարներուն հետ։

### «ՋԱՀԱԿԻՐ»Ի ՄՐՑԱՆՔ

*Հարցումներ.—*

1.— Ո՞ր խումբը պիտի շահի վերոյիշեալ մրցումը եւ պիտի ստանայ Տէր եւ Տիկին Կարօ Վարժապետեաններու բաժակը . . . . . . . . .

2.— Ի՞նչ պիտի ըլլայ արդիւնքը . . . . . . . . . . . . . . .

*Անուն Մականուն* . . . . . . . . . . . . . . . .

*Հասցէ* . . . . . . . . . . . . . . . . . .

# Արեւի եւ Լուսնի խաւարումներ

Տիեզերական ուշագրաւ երեւոյթներէն են Արեւի եւ Լուսնի խաւարումները։ Գրեթէ ամէն տարի տեղի կ՚ունենան անոնք։

Գիտնականներու հաշուարկումները պարզած են՝ որ 1969 թուականին տեղի պիտի ունենան Արեւի երկու եւ Լուսինի երեք խաւարումներ,

Արեւի առաջին խաւարումը պիտի տեսնուի Մարտ 18ին, իսկ երկրորդը՝ Սեպտ. 11ին։ Անոնք իրենց բնոյթով օղակաձեւ պիտի ըլլան եւ կարելի պիտի ըլլայ տեսնել Ամերիկայի եւ Աւստրալիոյ մէջ։

Լուսնի խաւարումները (Ապրիլ 4ին, Օգոստոս 27ին, Սեպտեմբեր 25ին) պիտի ունենան կիսաստուերային բնոյթ։ Այդ ժամանակ Լուսինը պիտի գտնուի Երկրի կիսաստուերին մէջ եւ պիտի աղօտանայ շատ աննշան, որ սովորական աչքի համար նկատելի պիտի չըլլայ։ Լուսաչափական ճշգրիտ գործիքներու միջոցաւ միայն կարելի պիտի ըլլայ տեսնել Լուսնի խաւարումները։

# ՄԱՆԿԱՏԱԾՈՒԹԻՒՆ

(Շարունակութիւն Գ. էջէն)

մէկ հատ Ֆրանսըխ, մէկ հատ Ֆրանսըխ, վրայէն Շառբռեզ լիմոնակել ճեյֆիմ կել։ Ցերեկին սթէյմները ուտելէն փաքլամիշ կ՚ըլլամ։ Իրիկունը պոսերս գործէն տուն կուգան, փառաւոր ինքնաշարժով մը գիս տունս կը բերեն եւ կը սկսիմ խմիչններու քովը հպարտութեամբ չնչել, որ ես ուրիշին վրայ բեռ չեմ եղած։ Ամսու գլուխ եղա՞ւ, հայտէ պանգա։

«Անհա թէ ինչ կը նշանակէ Պէյպի Սիթըրը։ Հիմա նստէ գրէ՛»։

Խնամակալուհին ունկնդրելէ ետքը կը միայ նօթագրել։ Ցանկարծ սենեակին պատին ներսէն կը լսուին երախայի մը ճիչերը։ Քիչ ետք միւս պատէն, աւելի ետքը վերէն ոտքի թափահարումներ անհա։

Ակներեւ է թէ մանկատածութեանց մէջ կը տապլտկիմ։ Իրիկուն կ՚ըլլայ։ Հիմա լուռ են պատերը։

Պզտիկներուն մայրիկները եկած եւ ստացած զանոնք։ Կը նայիմ պատուհանէն դուրս։ Մայր եւ զաւակ գիրկընդխառնուած են կառքոտակէզ։ Կ՚աներեւութանան ձիւնի մշուշի մը մէջ։

Յաջորդ առաւօտուն դարձեալ նոյն տեսարանը։ Մայր ու զաւակ կը բաժնուին իրարմէ։

Մաման իր հոգեհատորը յանձնելէն ետքը խնամակալուհիին, կը դիմէ իր գործատեղին։ Կը զարնէ գրամեքենային, կը զարնէ փապրիքի մեքենային, կարի ասեղին եւայլն։

Նկատելի է որ առաւօտները փոքրիկները ազդին պատերուն ետին կը ճուան, բայց զարմանալիօրէն երեկոյեան դէմ այդ ճուռցը կը փոխուի ճուռղիւնի։ Կարծէք կը զգան թէ մամային գալը մօտալուտ է։

Եւ դարձեալ նոյն ամէնօրեայ պատկերը պատուհանէն դուրս, հոգեհատոր մը եւ մայր մը գիրկընդխառնուած կը յառաջանան, հետիոտն, օթոպիւսով կամ ինքնաշարժով դէպի տուն, դէպի մխիթարութիւն, դէպի սփոփանք։

Հիմա պատուհանէն դուրս ամայի է եւ կը կարդամ Տանթէի մէկ մտածումը.

— Հին երջանիկ յիշատակները մեծ տառապանք են նոր կեանքերու թաւալումին մէջ....

Խ. Տ.

(Մոնրեալ 1969)

# ԱՆԱՀԻՏ ՑԻՑԻԿԵԱՆ

(Շարունակութիւն Գ. էջէն)

Աւարտեց տասնամեակը, աւարտեց գոնսէրուաթուարը՝ Մոսկուայի երաժշտանոցին կից, փրոֆեսէոր Մոսդրասոփի ղեկավարութեամբ։

Պատահական չէ թերեւս, որ մեր ձայնասփիւռի եւ հեռատեսիլի սիմֆոնիկ նուագախումբն իր նոր համերգաշրջանն սկսեց Պախի գոնչերթով, որի մենակատարներն էին Անահիտ Ցիցիկեանն ու Ժան Տէր-Մերկերեանը։

Ջութակահարուհու նուագացանկում շատ կան այնպիսի երկեր, որոնք մասնաւորապէս նրա քնարական նախասիրութիւնների վկայութիւնն են։ Դրանք հիմնականում դաշնամուրի նուագակցութեամբ ջութակի մանրանուագներ են, ինչպէս օրինակ, Պոնս-Հայֆեցի «Էսթէրլիտան», Շուպերտի «Աւէ Մարիան» եւայլն։

Սակայն ինչպէս ամէն մի հայ երաժշտի, այնպէս էլ Անահիտ Ցիցիկեանի համար սեփական նուագացանկի հիմքը ազգայինն է։ Եւ, ինչ խօսք, առաջին հերթին Կոմիտասը։ Եւ ուր գնացել է ջութակահարուհին՝ իր հետ տարել հայ մեղեդին։ Երբ նա հայկական մեղեդի է նուագում, հայ մարդու, հայ արուեստագէտի էութիւնը ըզգացւում է։ Զգացւում է ամէն մի հնչիւնից, նա այդ բանը շատ լաւ էր գիտակցում, երբ Պուլկարիայի տարբեր քաղաքներում, Եգիպտոսում եւ Իրաքում նուագում էր հայրենակիցների առջեւ։ Գիտէ՛ր որ գրուցում է նրա հետ ամենաազնիւ ու ամենասուրբ լեզուով։ «Քելեր, ցոլեր՝ իմ եարը»- նուագում էր նա, եւ նուագը անբառ պատմում էր ամենատխուր, ամենասուրբ, ամենանուիրական պատմութիւնը։

Այդ ամէնը՝ Պուլկարիայում, Եգիպտոսում, Իրաքում, ուր շատ հայեր կան եւ հայրենի երգ երաժշտութեանը ծարաւ շատ հոգիներ։

# ՆՈՒԻՐԱՏՈՒՈՒԹԻՒՆՆԵՐ

(ԵԳԻՊՏԱԿԱՆ ԴԱՀԵԿԱՆՈՎ)

Իրենց սիրեցեալ ամուսնոյն եւ հօր՝ ողբ. Գէորգ Սարաֆեանի մահուան Ա. տարելիցին առթիւ եւ անոր քաղցր յիշատակին, այրի Տիկին Բուբուլ Սարաֆեան եւ զաւակունք՝ Ցարութիւն, Միսաք (Ամերիկա) եւ Շուշիկ կը նուիրեն.

| | |
|---|---|
| Եկեղեցւոյ Պայծառութեան | 200 |
| «Արեւ»ին | 200 |
| «Յուսաբեր»ին | 200 |
| «Ջահակիր»ին | 200 |

(Ստանալ Գահիրէի Ազգային Առաջնորդարանէն)

### «ՋԱՀԱԿԻՐ»ԻՆ

Առ ի գնահատութիւն թերթիս ազգային ուղղութեան, Պր. Վաղինակ Լուսինեան (Խարթում) կը նուիրէ 500 ե.դ.։

Տէր եւ Տիկին Անդրանիկ Միսքճեան (Աղեքս.) ուրախ առիթով մը կը նուիրեն 100 ե.դ.։

Պր. Պետրոս Տընկճեան 100 ե.դ. կը նուիրէ ողբ. Ղուկաս Ցովակիմեանի մահուան Բ. տարելիցին առթիւ։

Ողբ. Էտուար Սարգիսեանի մահուան տխուր առթիւ, վասն ցաւակցութեան, Տէր եւ Տիկին Նուպար Կէրիկեան կը նուիրեն 100 ե.դ.։

### ԱՂԵՔՍԱՆԴՐԻՈՅ ՀԱՅԿԱԿԱՆ ԸՆԹԵՐՑԱՍՐԱՀԻՆ

Ո՛Ձ (ընկ. Թիւ 20) սրահի բարեզարդման համար կը նուիրէ 500 ե.դ.։

Տէր եւ Տիկ. Կարապետ Ծըռճըռեան առ ի գնահատութիւն կը նուիրեն 100 ե.դ.։

Տէր եւ Տիկին Անդրանիկ Միսքճեան ուրախ առիթով մը կը նուիրեն 100 ե.դ.։

### «ՋԱՀԱԿԻՐ» ԿԸ ՆՈՒԻՐԵՆ

Պր. Վաղինակ Լուսինեան (Խարթում) մէկ տարուան «Ջահակիր» կը նուիրէ Պր. Հայկազ Տէմիրճեանի (Երեւան)։

